Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ,
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2 (33)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի, ագիտացիայի յեվ մամուլի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

**№ 2 (33)**



ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Ա. ՄԻՐՈՆՈՎ

# ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԸ 1938 ԹՎԱԿԱՆԻ ՆԱԽԱԴՌԱՆԸ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՅԵՎ ՎՐԱ ՀԱՍՆՈՂ ԿՐԻԶԻՍԻ ՆՇԱՆԱԲԱՆԻ ՏԱԿ

Խորհրդային Միության համար առաջիկա՝ 1938 թվականը՝ դա ստալինյան յերրորդ հնգամյակի առաջին տարին է, արտադրական ուժերի նոր վերելքի տարին, տնտեսության ու կուլտուրայի բուռն բարգավաճման տարին: Մենք այն մուտք ենք գործում սոցիալիզմի հաղթանակների հոյակապ հանրագումարներով, հետագա, և՛ ավելի վիթխարի հաղթանակների նոր պլանով:

Բոլորովին այլ հանրագումարներով ու հեռանկարներով է մտնում 1938 թվականի շեմքին կապիտալիստական աշխար-

հը։ Այդ անուրախ հանրագումարները և ավելի առավել մռայլ հեռանկարները թախիծով ու տագնապով են լցնում կապիտալիստների սիրտը նոր տարվա որամուտին։

Փայլուն կերպով հաստատվեց 1934 թվի հունվարին ՀամԿ(բ)Կ XVII համագումարում իր զեկուցման մեջ տված ընկեր Ստալինի ցուցումը։ Թեպետ և կապիտալիստական աշխարհն այն ժամանակ անցել եր ամենամեծ անկման կետն ու մուտք եր գործել դեպրեսիայի շրջանը, բայց և ինչպես կանխատեսել եր ընկեր Ստալինը, այդ՝ մի «հատուկ տեսակի դեպրեսիա» յեր, վորը չհանգեցրեց կապիտալիստական արդյունաբերության նոր վերելքի և ծաղկման։

Նախորդ կրիզիսից, աշխատավորներին չլսված շահագործելու հաշվին, մի կերպ դուրս պրծած կապիտալիստական աշխարհն արդեն կանգնած է նոր, ըստ բոլոր տեսքանշանների առավելապես ավելի սպառնալից կատաստրոֆի շեմքին։ Շեշտակի կերպով ընկնում են ակցիաները համաշխարհային բորսաներում։ Նրանց կուրսը Ամերիկայի Միացյալ Նահանգներում



ամենաառավել անկման կետին է մոտենում 1932 թվին։ Կրճատվում է արտադրությունը։ ԱՄՆ-ի պողպատաձուլական արդյունաբերությունը 1937 թվականի վերջում բեռնավորված է իր արտադրողական կարողության ընդամենը 27,5%-ով միայն, այն ժամանակ, յերբ 1931 թվին, նախորդ տնտեսական կրիզիսի յեռուն շրջանում, այն 38%-ով եր բեռնավորված։ Բոլոր տվյալները այն են հաստատում, վոր ԱՄՆ-ում կրկին վրա յե հասել գերարտադրության կրիզիսը։ Արագորեն աճում է անգործների թիվը, վորը ԱՄՆ-ում հասել է արդեն 10 միլիոն մարդու։

Ինչպես և 1929 թվին, տնտեսական նոր փոթորկի առաջին շունչն ովկիանոսի մյուս կողմից է գալիս՝ ԱՄՆ-ից, ամենահարուստ կապիտալիստական յերկրից, վորը հազարավոր թելերով կապված է բոլոր մնացած բուրժուական պետությունների հետ, ամբողջ համաշխարհային կապիտալիստական եկոնոմիկայի հետ։ Վոչ մի կապիտալիստական յերկիր չի կարող դիմանալ այդ փոթորկի առաջ։ Նրա նշաններն արդեն զգացվում են Յեվրոպայի բոլոր բուրժուական յերկրներում։ Դրանք առանձնա-

պես սուր են զգացվում Ճապոնիայում։ Դրանք իրենց չեչտակի յեն զգացնել տալիս ֆաշիստական Գերմանիայում։ Իզուր են ֆաշիստական դեմագոգները մնապարծությամբ հավատացնում, թե տնտեսական նոր կրիզիսն, իբր՝ ինչպես տեղում մեխված, կանգ կառնի «յերրորդ կայսրության» սահմանների մոտ։ Հիտլերը կարող է կառափնարան և բանտ ուղարկել նոր հազարավոր ու տասնյակ հազարավոր հակաֆաշիստներ, սակայն նա իշխանություն չունի կապիտալիստական եկոնոմիկայի և նրա օրենքների վրա.— նա նրա լաքեյն է, այլ վոչ թե տերը։ Գերմանիայում նույնպես ակներևաբար զգացվում է տնտեսական մրրիկի մերձեցումը։ Մենք էլ չենք խոսում լայն սպառման ապրանքների արտադրության մասին, վորի մակարդակը նույնիսկ «աշխուժացման» տարիներին յերբեք չհասավ 1929 թվականի մակարդակին։ Մենք էլ չենք խոսում մեքենաների արտադրության մասին, վորտեղ նույնպես այդպիսի պատկեր է դիտվում։ Նույնիսկ Գերմանիայի պողպատաձուլական արդյունաբերությունը, նայած հսկայական ռազմական պատվերներին, 1937 թվի III յեռամսյակում՝ 1936



թվի III յեռամսյակի համեմատությամբ իջեցրեց իր արտադրանքը։ Խստորեն կրճատվում է գերմանական արտահանությունը։ Գերմանիան 1937 թվի հուլիսին արտահանել է գլանված պողպատից պատրաստած 290 հազար տոնն ապրանքներ, իսկ սեպտեմբերին՝ արդեն 185 հազար տոնն միայն։

Տնտեսական կրիզիսը, վորն այժմս տիրաբար թակում է կապիտալիստական աշխարհի դուռը, առաջ է գալիս, ինչպես և նախորդ տնտեսական կրիզիսում, կապիտալիզմի ընդհանուր կրիզիսի պայմաններում։ Կրիզիսի մոտեցումն արագացվում է սպառազինությունների, պատերազմների տենդով, վորոնք մղում են ագրեսիվ ֆաշիստական պետությունները Ջինաստանում և Իսպանիայում, և ֆաշիստների կողմից համաշխարհային պատերազմը նախապատրաստելու տագնապային հանգամանքով։ Արդեն այժմս փաստորեն պատերազմի դրության մեջ են գտնվում Ճապոնիան, Չինաստանը, Գերմանիան, Իտալիան, Իսպանիան՝ հինգ յերկրներ, վորոնց բնակիչները կազմում են 656 միլլիոն մարդ, այսինքն յերկրագնդի բնակչության մեկ յերրորդը։

Այն ժամանակվանից, հենց որ հիտլերականների կողմից Գերմանիայում իշխանությունը գրավելն ազատ արձակեց պատերազմի ուժերն ամբողջ աշխարհում, սպառազինությունների ծախքերը վիթխարի չափերով աճեցին: Դրանք վերջին 6 տարիներում ավելացան բոլոր կապիտալիստական յերկրներում 65%-ով, 1932 թվականի 4,3 միլլիարդ վոսկի դոլլարից հասնելով մինչև 7,1 միլլիարդ վոսկի դոլլարի 1937 թվականում: Միայն Գերմանիան 1936 թվականին սպառազինությունների վրա ծախսեց պետական —18,8 միլլիարդ մարկ ծախքերից 12,5 միլլիարդ մարկ:

Այդ միլլիարդները դուրս են հոսվում բանվորների, գյուղացիների, աշխատավոր ինտելիգենցիայի աղքատիկ գրպաններից: Բավական է ասել, որ հիտլերյան տերտնորինության տարիներում հարկերն ավելացել են գրեթե 2 անգամ՝ 1932 թվի 6,6 միլլիարդ մարկից մինչև 11,5 միլլիարդ մարկի 1937 թվին: Այստեղ մտնում է միայն անմիջական հարկային տուրքագրումը: Իսկ չէ որ նոր պատերազմների համար ֆաշիստներն ստիպում են Գերմանիայի աշխատավորներին վճարել վոչ միայն հար-



կերը բարձրացնելու ճանապարհով, այլ և աշխատավարձն անընդհատ իջեցնելու, առաջին անհրաժեշտության ապրանքների և մթերքների գներն անընդհատ վեր բարձրացնելու ճանապարհով: Բնական է, որ լայն մասսաների գնողունակությունն ընկնում է, իսկ այդ տանում է դեպի վաճառահանության կրիզիսը:

Հսկայական ներդրումները ռազմական արդյունաբերության մեջ ուժգին կերպով հարվածում են արդյունաբերության մյուս ճյուղերին: Որինակ, Ճապոնիայում նկատելի յե այժմս մասսայորեն փակումն այն արդյունաբերական ձեռնարկությունների, վորոնք պատերազմի համար չեն գործում: Նրանց համար հումույթ չի բավականացնում: Իր ամբողջ վոսկին Ճապոնիան գործադրում է այժմս այն ամենի ներմուծման վրա, ինչ անհրաժեշտ է մարդկանց վոչընչացնելու գործիքների արտադրության համար:

Գերմանիայի և Իտալիայի ֆաշիստական ինտերվենցիան Իսպանիայում, ճապոնական իմպերիալիստների ավազակությունը Չինաստանում, աշխարհի նոր վերաբաժանման նախապատրաստությունը դարձյալ նպաս-

տում են համաշխարհային տնտեսական կրիզիսի սերտ աճմանը, վորովհետև ստեղծում են ամբողջ կապիտալիստական աշխարհում անկայունություն և տագնապի տրամադրություն: Կապիտալիստները ձեռք են քաշում նոր կապիտալ ներդրումներից: Ամերիկայի Միացյալ Նահանգներում 1937 թվականի առաջին 9 ամիսների ընթացքում նոր ներդրումները կազմել են ընդամենը 1 միլիարդ դոլլար միայն, այն ժամանակ, յերբ 1929 թվականի միևնույն ժամանակամիջոցում 6 միլիարդ դոլլար եր ներդրվել: Խիստ կրճատվում են պատվերները: Անգլիայում ևս նկատվում է ածխի, յերկաթի, պողպատի, գործվածքեղենի, առևտրաշոգենավերի պատվերների շեշտակիորեն անկումն: Ո՞վ է շոգենավեր կառուցելու, յերբ ֆաշիստական ծովահենները գրեթե սանձարձակորեն տեր-տնորինում են ծովերում, ջրասուզում են առևտրաշոգենավեր, բացահայտորեն ու լկտիաբար ծովագնացության ազատությունը վոտնահարելով: Ի՞նչպես կարող է զարգանալ անգլիական և ամերիկական կապիտալիստների արտահանությունը, յերբ թղթախաղի մեջ են դրված անգլո-ամերիկական հին-հին բազ-



մամիլիարդ ներդրումները Չինաստանում:

Ճապոնական ավիացիան, ճապոնական հրետանին, ավերելով Շանհայն ու Նանկինը, դրա հետ զուգընթաց պայթեցնում են համաշխարհային կապիտալիստական եկոնոմիկան:

## ՖԱՇԻԶՄԸ՝ ԴԱ ՄԱ՛Հ Է

Սարսափելի յե մտածել, թե վրա հասնող կրիզիսի ժամանակ ինչ է պատահելու ֆաշիստական այն յերկրների աշխատավորներին, վորտեղ մասսաների կյանքն առանց այդ էլ համատարած դժոխք է: Ֆաշիզմը՝ դա մա՛հ է: Գերմանիայի և Իտալիայի, Ճապոնիայի և Լեհաստանի աշխատավոր բնակչությունը վոչնչանում է սովից ու հիվանդություններից: Մահացությունն այնտեղ անընդհատ աճում է, ծննդաբերությունն անընդհատ ընկնում: Գերմանիայում հիտլերյան տիրակալության տարիներում մահացությունը պրոլետարական բնակչության մեջ ավելացավ 32 %-ով: Հիվանդությունը գերմանական բանվորների միջև 1932 թվականի 24%-ից 1937 թվականին բարձրացավ մինչև 41 %-ի: Դժբախտ պատահարներ գերմանական ձեռնարկություննե-

րում 1932 թվականին 827 հազար է յեղել, 1936 թվականին՝ 1534 հազար:

Նույնիսկ այնպիսի բովված ստախոսն ու դեմագոգը, ինչպիսին հիտլերյան պրոպագանդի մինիստր Գեբբելսն է, հարկադրված էր խոստովանելու, որ Գերմանիայի յուրաքանչյուր վեցերորդ բնակիչը մուրացկանությամբ է զբաղվում: Ֆաշիստական պարագլուխները գերմանական բանվորներին «հայրաբար» խորհուրդ են տալիս սընվել չաղգամով, կաղամբով և սխտորով, իսկ իրենք ,մինչդեռ ,իրենց համար պերճ դղյակներ են կառուցում Նիցցայում: Գերմանական գիտնականները ֆաշիստական իշխանավորների հրամանով հենց միայն այն են անում, որ գյուտում (գյուտ են անում) ամեն տեսակ սուրոգատներ: Վերջին «նորությունն» այդ տեսակետից արհեստական բուրդն է... ձկան թեփուկից: Հասկանալի յէ, որ այդպիսի բրդից պատրաստված հագուստ գործածելն աշխատավորներին են միայն խորհուրդ տալիս: Ֆաշիստական մեծ ու փոքր «ֆյուրերները» գերադասում են անգլիական լավորակ շևիոտից պատրաստած կոստյումները:

Գերմանիայի, հրեշային շահագործումից,



թշվառացումից, անգործությունից և անլուր ճնշումից վհատության հասցրած աշխատավորների ահագին թիվը ինքնասպանությամբ է վերջ դնում կյանքին: Ահա մի քամնելի փաստաթուղթ՝ վերջին ժամանակներս Գերմանիայում տեղի ունեցած ինքնասպանությունների ամենից շատ յերկարացող ցուցակից վոչ մեծ քաղվածք: Այդ ցուցակում մենք տեսնում ենք թե՛ բանվորներ, թե՛ ինտելիգենտներ, թե՛ ծերունիներ, թե՛ յերիտասարդություն: Հենց միևնույն օրում Բեռլինում՝ նախօրոք կնոջն սպանելուց հետո անձնասպանություն է գործել տեխնիկական ուսումնարանի 56 տարեկան մի պրոֆեսոր, և լուսամուտից ցած է նետվել 25 տարեկան մի բանվոր: Հենց այն ժամանակ, յերբ Շենեբերգում (Բեռլինի ռայոններից մեկը) թույն եյին ընդունում զառամած մի մարդ ու կին, մայրաքաղաքի հյուսիսային ռայոնում գնացքի տակ նետվեց 25 տարեկան մի նորափթիթ կին:

Վհատությունից խելակորույս հայրեր ու մայրեր, նախքան զզվելի դարձած կյանքին վերջ դնելը, սպանում են իրենց փոքրահասակ մանուկներին: Բրեսլավլյում մայրը կտրել է քնած աղջկա յերակները, իսկ հետո ինքը մյուս աղջկա հետ նետվել է գը-

նացքի տակ: Բենդորֆում, Կոբլենցի մոտ, հայրը գնդակահարեց մինչև 5 տարեկան 3 երեխաներին, ապա կնոջը, որից հետո ինքնասպանություն գործեց: Շիրեմբերգում մի գործազուրկի կին 6 ամսականից մինչև 3 ½ տարեկան 3 երեխաներին գետը գցելուց հետո, նրանց հետևից ջուրը նետվեց: Կոբլենցում գործազուրկ Իոհանն Միխելը սպանեց կնոջն ու 4 երեխաներին: Ցանտենում 32 տարեկան հայրը թունավորեց 2 երեխաներին և ինքնասպանություն գործեց: Բեռլինում 27 տարեկան Կլարա Բուրգարտը խոհանոցային դանակով կտրեց 5 տարեկան աղջկա կոկորդը և դրանից հետո փորձեց վերջ տալ իրեն:

Մենք փորձի համար քաղվածեցինք մի քանի փաստեր: Ընդամենը, 1937 թվի առաջին կիսամյակի ընթացքում, ֆաշիստական պաշտոնական վիճակագրության բացահայտորեն ոչ լրիվ տվյալների համաձայն, Գերմանիայում ցուցակագրված են 9023 ինքնասպանություն: Երկրորդ կիսամյակում դրանք զգալապես ավելի շատ են եղել: Մինչև այն աստիճան վհատության են հասցրել, որ մայրն սեփական երեխային է սպանում՝ ահա ֆաշիստական տեր-



տիրության հանրագումարներից մեկը...

Ֆաշիստական Իտալիայում ևս Մուսոլինիի և իր բանդայի բարձր խնամակալության ներքո մահը բացարձակապես խըրախճանք է անում կյանքի վրա: Ծնունդն Իտալիայում 1929 թվականի 1125 հազարից կրճատվել է 1936 թվականում մինչև 995 հազարի: Իտալիայում ամեն տարի ծնվում են 40 հազար մեռած երեխաներ, 20 հազար երեխաներ կորչում են ծնվելուց հենց առաջին հինգ օրում: Նորածինների 20 %-ը մեռնում է նույնիսկ մի ամիս էլ չապրած:

Իտալացիները երբեք աչքի չեն ընկել առանձին պահանջկոտությամբ դեպի ուտելիքը: Մուսոլինին մի անգամ ասաց՝— «Իտալացիների երջանկությունն այն է, որ նրանք սովորեցին օրական միայն մեկ անգամ ուտել»: Ֆաշիստական տիրապետության տարիների ընթացքում իտալական աշխատավորների սպառման նույնիսկ կիսաքաղց նորման սաստիկ կրճատվեց: Պարենամթերքների սպառումը բնակչության մի շնչին Իտալիայում 1936 թվականում կազմում էր 1934 սովի տարվա միայն

64 %-ը: Իսկ յեթե լոկ միայն հացի սպառումը վերցնենք, ապա ստացվում ե առավել ևս ավելի չչմեցնող մի թիվ: 1936 թվականում իտալական աշխատավորները սպառել են միայն 47 %-ը հացի այն քանակության, վոր նրանք կերել եյին 1934 թվականում: Ֆաշիստներն իտալացիներին մոռացնել են տվել վոչ միայն միսն ու ճարպը, այլ և նույնիսկ կարտոֆիլը, բանջարեղենն ու միրգը, վորոնք իտալական ժողովրդի համար միշտ յեղել են սննդի ամենամատչելի մթերքը:

Աշխատավորներին անողոքաբար կողոպտելու քաղաքականություն ե վարում նույնպես ֆաշիստական յեռյակային բլոկի յերրորդ մասնակիցը՝ Ճապոնիան: Դեռևս մինչև Չինաստանի վրա ներկայիս, նոր հարձակումը, վորը հսկայական նոր ծախքեր պահանջեց, ճապոնական բանվոր դասակարգի դրությունը միանգամայն անտանելի յեր: Խոշոր ձեռնարկությունների բանվորների 70 %-ը որական 10-12 ժամ ե աշխատում, իսկ մանր ձեռնարկություններում գոյություն ունի աշխատանքային 15 ժամյա, և նույնիսկ 18 ժամյա որ: Ճապոնական բանվորի, 1937 թվականում, ա-



ռանց այն էլ չնչին աշխատավարձը 18 %-ից ցածր ե, քան թե 1929 թվականինը, իսկ բանվորուհու աշխատավարձը (վորն ավելի յե ցածր) պակասել ե 23 %-ով: Մինչդեռ ապրուստը 2 անգամ թանկացել ե:

Մահվան հետ դաշն են կնքել նմանապես լեհական պլուտոկրատները: Լեհական աշխատավորների մեկ միլիոնից ավելին հիվանդ են տուբերկուլյոզով: Մի շարք տարիներ ֆաշիստական Լեհաստանը իր ձեռքում ե պահում համաշխարհային տխրալի ռեկորդը՝ ռեկորդը մահացության՝ թոքախտից:

Լեհաստանում 1930 թվականին բնակչության տարեկան 17 մարդ կազմած բնական աճը 1937 թվականին կրճատվեց մինչև 10,5 մարդու: Պլուտոկրատներն անդունդն են գլորում հազարավոր աշխատավորների: 1936 թվականին 4450 մարդ ինքնասպանություն գործեց Լեհաստանում: Նրանց կեսից ավելին կազմում եր մինչև 30 տարեկան հասակ ունեցող յերիտասարդությունը:

Ֆաշիզմի մահաստարած ժանտախտը մոլեգնում ե վոչ միայն բանվորական թաղամասերում, այլև գյուղերում: Գերմանա-





կան գյուղացին տնքում է ուժից վեր հարկերի ծանրության տակ, նրա աշխատանքի վրա անպատկառելիորեն անողորմ ֆաշիստական վերահսկիչների լծի տակ: 1937 թվականին մի նոր, սարսափելի պատուհաս ընկավ գերմանական գյուղացու վրա: Գերմանիան չարունակ արտասահմանից էր կերանյութեր ներմուծում: Այժմս կերանյութերի ներմուծումը գրեթե բոլորովին կրճատված է՝—հիտլերականները գերադասում են ռազմամթերքներ գնելը: Անասունների միջև կերի պակասի հետևանքով անասունների համաճարակներ, և դրանք մասսայականորեն սատկում են:

Անբավականությունը ֆաշիստական ռեժիմից գերմանական գյուղում այժմս այնպիսի չափեր է ընդունել, որ հիտլերականները հարկադրված էին «գյուղացիական համագումարը» անորոշ ժամանակով հետաձգել, որը մտադիր էին նրանք նոյեմբերին հրավիրելու: Նույնիսկ այդ «համագումարը», որտեղ պետք է ժամանեյին միայն մանրազնին ընտրությամբ ջոկված ունևոր գյուղացիների ներկայացուցիչները, ֆաշիստները վախենում են այժմ գումարելուց:



Լեհ գյուղացին առանձնապես քաղցր կյանք երբեք չի ունեցել: Բայց այժմս նրա թշվառությունը իրոք սարսռեցուցիչ չափեր է ընդունել: Նա ցնցոտիներ է հագած, նա չունի անհրաժեշտագույն բաները, նա օճառ միանգամայն չի գործածում: Լեհական ֆաշիստների կողմից հարստահարված Արևմտյան Ուկրաինայի գյուղերում 1929 թվականի համեմատությամբ շաքարի սպառումը իջել է 93 %-ով, աղինը՝ 87 %-ով, նավթինը՝ 72%-ով, ածուխինը՝ 52%-ով:

Մոտավորապես մի միլիոն լեհ երեխաներ դպրոցից դուրս են մնացել: Բայց և այն «բարեբախտներն» էլ, որոնք դպրոց են ընդունված, ամեն քայլափոխում զրկված են այն հաճախելուց: Լեհ գյուղացու ընտանիքում մի քանի երեխաներին մի զույգ ծակ կոշիկ է ընկնում, և նրանք հարկադրված են դպրոց փոխեփոխ հաճախել:

Ճապոնական գյուղացին Չինաստանի հետ պատերազմից առաջ էլ ստիպված էր իր դուստրերը ծախել հասարակական տներին, զրկված էր պստիկ հողակտորներում սեփական ձեռքերով մշակած նույնիսկ բրնձով մի կուշտ փորով հագենալու

հնարավորությունից: Այժմս նա ճապոնական բանկերի հետ պետք է հատուցի ճապոնական իմպերիալիստների սարքած տրական 5 միլիոն իեն կլանող թալանչիական ավանտյուրայի ծախքերը: Յեվ ճապոնական գյուղացին, վորի գլխին տեղաց նոր հարկերի, տուրքագանձումների, բռնագրավումների տեղատարափը, աներևակելի սուղ կյանք է վարում:

## ՎԱՅՐԵՆԻՆԵՐ ՅԵՎՐՈՊԱՅԻ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Ֆաշիզմն իր արյունոտ, կեղտոտ թաթն է դնում վոչ միայն էկոնոմիկայի, վոչ միայն քաղաքականության այլ և կուլտուրայի վրա այն յերկրների, վորտեղ նա տնորինում է:

Դեռևս 1932 թվին, մինչև Հիտլերն իշխանության գլուխն անցնելը, Գերմանիայում հաշվվում եր 145 հազար ուսանող, իսկ 1935—1936 ուսումնական տարում նրանց թիվը կրճատվեց մինչև 76 հազարի:

Գերմանական գիտությունն առաջատար տեղ եր յերբեմն գրավում Յեվրոպայում: Այժմ գերմանական կեղծ գիտնականները լուրջ տեսքով քննարկում են ռասսայականության վերջերս կայացած հերթական



կոնգրեսում վոմն «դոկտոր» Գվենդենի նախագիծը բոլոր գնչուներին գլխովին ամլացնելու մասին:

Յեվրոպայի կենտրոնում, յերբեմն ամենակուլտուրական յերկրում, ֆաշիստները վերակենդանացնում են միջնադարի մռայլ ժամանակները, հրեաներին հարկադրում են նվաստացուցիչ դեղին նշաններ կրելու, գրասայլերում և այլ սրճարաններում հրեաների համար առանձին նստարաններ են առանձնացրել, արգելելով նրանց նստել ընդհանուր նստարանների վրա, «արիացիների» կողքին: Հրեա աղջիկներին բանտ են նետում նրա համար, վոր նրանք թույլ են տալիս «արիացի» յերիտասարդներին սիրատածելու իրենց:

Ֆաշիստների հակասեմիտիզմը, սակայն, նրանց ամենևին չի խանգարում առաքարչությամբ վերաբերվել հրեական խոշոր կապիտալիստներին: Վերջերս Բեռլինում մեծ հարգանքներով թաղվեց հրեա բանկիր Պաուլ Շվաբախը: Ֆաշիստական թերթերը նրա մահվան կապակցությամբ տպագրեցին հսկայական սուգ ազդեր:

Ֆաշիստական վայրենիները հանգիստ չեն թողնում նաև յերեխաներին: Արդեն 5 տարեկան հասակից այժմ սկսում են գերմա-

նական յերեխայի ռազմական ծանր վարժությունները: Թե այդ կրթենից ինչ է ներկայացնում, ցույց է տալիս հետևյալ ցնցիչ դեպքը: «Հիտլերյան յերիտասարդության» ռազմական ճամբարում, Գրիմմի մոտ (Սաքսոնիա), Կարլ Բունիներ, 10 տարեկան մի տղա գիշերը դուրս եր յեկել վրանից: Նրան ձայն է տալիս պարեկը: Յերեխան այդ կանչին լուրջ նշանակություն չտալով մի քիչ հապաղեց պատասխանելը: Պարեկայինը, վորը նույնպես 10 տարեկան մի տղա յեր, ատրճանակի կրակով սպանեց տեղնուտեղը «մեղանչածին»: Այն հարցին, թե նա ինչու գնդակահարեց Բունիներին, պատանի մարդասպանը սառնասրտորեն պատասխանեց, վոր կանոնադրությունն է հնազանդվել, վորը պատվիրում է զենքը գործադրել թշնամու դեմ: Ֆաշիստական տրիբունալը պատասխանատվության յենթարկեց... սպանված տղայի հորը նրա համար, վոր նա տեղական թերթում իր տղայի կորստյան առթիվ ազդ է տվել և դրանով իբր «նացիոնալ-սոցիալիստական կուսակցության ու պետության անվտանգությանը վնաս է բերել»:



## ՄԱՀ ՖԱՇԻԶՄԻՆ

Ֆաշիզմը՝ դա մահ է: Իսկ աշխատավորներն ապրել են ցանկանում, և այն էլ՝ ազատորեն ապրել: Յեվ նրանք վեր են յելնում պայքարելու ֆաշիստական բանդիտների դեմ:

Ֆաշիստական տեռորն որեցոր խստանում է: Յուրաքանչյուր որ Գերմանիայում, Իտալիայում, Լեհաստանում, Ճապոնիայում տեղի յեն ունենում հակաֆաշիստների դեմ դատական պրոցեսներ, մահապատիժներ, մասսայական ձերբակալություններ:

Աշխատավորները ֆաշիստական յերկրներում վեր են ածվել իրավազուրկ ստրուկների: Գերմանիայում բանվորները «ձեռնարկության հավատարմությունը» խախտելու համար, այսինքն՝ մի գործարանից մյուսն անցնելու համար հատուկ տրիբունալների դատին են յենթարկվում: Ֆաշիստական բոլոր յերկրների բանվորներին ու գյուղացիներին ծաղրում է ֆաշիստական չինովնիկների անհամար ամբոխը: Նրանց յուրաքանչյուր քայլին հետևում է ֆաշիստական լրտեսների վտառը (խումբը):

Այդ բոլորին հակառակ, հակաֆաշիստական շարժումն ավելի և ավելի յե ծավալվում և 1937 թվականի վերջին ամիսներին առանձնապես լայն թափ է ընդունել: Կյանքը ռիսկի յենթարկելով հակաֆաշիստական անձնուր մարտիկները Գերմանիայում և Իտալիայում, Ճապոնիայում և Լեհաստանում հակաֆաշիստական գրականություն են տարածում: Վերջերս Միլանում հակաֆաշիստական թռուցիկներ եյին շաղացրում այն ավտոմոբիլից, վորը կայծակի արագությամբ սլանում եր քաղաքի փողոցներով: Տոկիոյում վոստիկանությունը մեկ այստեղ, մեկ այնտեղ հակապատերազմական գրականություն է բռնագրավում: Բավարիայում, գերմանական ֆաշիզմի այդ կենտրոնում հսկայական քանակությամբ վերջերս տարածվել եր սուր, հակահիտլերական պրոկլամացիաներ: Ահա արդեն մի քանի ամիս է, ինչ Գեստապոն վոչ մի կերպ չի կարողանում հայտնաբերել հակաֆաշիստական առեղծվածային «Ազատություն» ռադիոկայանը, վորի հաղորդումներն ագահորեն վորսում են Գերմանիայի բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան, ուսանուհիները:



Հակաֆաշիստական շարժման վերջին ժամանակներիս ամենաբնորոշ գիծը հանդիսանում է նրա մեջ բանվոր դասակարգին զուգընթաց գյուղացիության և աշխատավոր ինտելիգենցիայի լայն մասնակցությունը: Լեհաստանում մասսայական գյուղացիական բանադուլը և ուսուցիչների քաղաքական գործադուլը լուրջ հարված հասցրին պիլսուդսկիականության ռեժիմին: Շարունակ ավելի սուր և ավելի վճռականորեն է հիտլերականության դեմ հանդես գալիս գերմանական գյուղացիությունը, վորն առաջադրում է տնտեսականի հետ նաև զուտ քաղաքական պահանջներ, պնդում է գյուղատնտեսությունն ազատագրել ֆաշիստական խնամակալությունից՝ պահանջում է, վորպեսզի համակենտրոնացման ճամբարներից ազատ արձակվեն այնտեղ ընկնող հողագործները: Իտալական հակաֆաշիստներին վերաբերող վերջին բոլոր դատավարություններում բանվորների և գյուղացիների հետ կողք-կողքի մեղադրյալների աթոռին եյին նստած իտալական ինտելիգենցիայի ամենանշանավոր ներկայացուցիչները:

Հակաֆաշիստական շարժումը տեղա-

շարժվում է նաև դեպի բանակը: Իտալականից հետո սկսեցին կազմալուծվել նաև Իսպանական ժողովրդի դեմ մարտի ելած գերմանական օկուպացիոն զորամասերը: 17 գերմանական օդաչուներ Իսպանիայից Անգլիա փախան՝ չցանկանալով այլևս հնազանդվել Հիտլերի ավազակային հրամաններին, չցանկանալով թաթախել իրենց ձեռքերը կանանց ու երեխաների արյան մեջ:

Բուրժուական-դեմոկրատական երկըրներում իշխանությունը գրավելու գծով ֆաշիստական դավադիրների փորձերը դեմ են առնում ժողովրդական ճակատի կողմից ղեկավարվող աշխատավորների ամենալայն մասսաների ավելի ու ավելի հզոր հակահարվածին: Ֆրանսիայում ֆաշիստական բոլոր վոտնձգությունները անխուսափելիորեն անհաջողություն են կրում: Իտալական ֆաշիստները, վորոնք սրանից 15 տարի առաջ գրավեցին Հռոմը, գերմանական ֆաշիստները, վորոնք սրանից 5 տարի առաջ Բեռլինին տիրեցին, այժմ երկար ամիսներ ապարդյուն քարշ են գալիս Մադրիդի տակ. արմունկը մոտիկ է, սակայն կծել չի լինում: Գերմանա-իտալա-



կան ինտերվենտների ճանապարհն Իսպանիայում փակեց միացյալ ժողովրդական ճակատը: Դաժան փորձից խելոքացած աշխատավորները հասկանում են, վոր միայն միության մեջն է իրենց հաղթության գրավականն ընդդեմ ֆաշիստական գազանների:

## ՆՈՐ ՏԱՐՎԱ ՎՈՂՋՈՒՅՆ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ՑԵՂԲԱՅՐՆԵՐԻՆ

Ներքին հակասություններից տակնուվրա, սոցիալական և ազգային կոնֆլիկներից ցնցված, ռազմական շարունակ սերտաճող հրդեհի բոցով բռնկված, ֆաշիստական սոսկալի ժանտախտով վարակված կանգնել է նոր՝ 1938 թվականի նախադռանը կապիտալիստական աշխարհը: Տնտեսական նախորդ կրիզիսից դեռևս չապաքինված նա արդեն մուտք է գործում տնտեսական նոր փոթորիկների շրջանը՝ ժամանակաշրջան, վորը բարդացել է բուրժուական-դեմոկրատական պետությունների բանակում տիրող քաղաքական խառնաշփոթությունից և քաղաքական տարակարծությունից, ֆաշիստական բանակում

տիրող քաղաքական ավանտյուրիզմից ռազմական մոլեգնությունից:

Բուրժուազիայի գոյությունը, կապիտալիստական հասարակարգի գոյությունը հասարակության կյանքի հետ անհամատեղելի յեն դարձել: Իրեն — կապիտալիզմի ստեղծած իր գերեզմանափորը — պրոլետարիատը կասի իր տիրական խոսքը: Հասնելով սեփական շարքերում միասնության, Արևմուտքի բանվոր դասակարգը բոլոր աշխատավորների գլուխն անցնելով վերջ կը դնի Ֆաշիզմին՝ մարդկության նողկանքին ու նախատինքին: Ինչպես մի ուղեցույց փարոս լուսավորում են Կրեմլի աստղերն ընդդեմ կապիտալիզմի պայքարի յելած և յելնող մասսաների: Մեր յերկրի աշխատավորների օրինակը, վորոնք ցարական կիսաֆեոդալական կայսրության բեկորների վրա հզոր, առաջավոր, ծաղկող սոցիալիստական պետություն են կառուցել, լցնում է արտասահմանում մեր յեղբայրների սրտերը հպարտությամբ, հիացմունքով, հույսով:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունները ցույց տվին ամբողջ աշխարհին, թե ինչպես յերջանիկ, բերկրալից ու



համախմբված է խորհրդային ժողովուրդը, ցույց տվին իր կուսակցության, իր կառավարության, իր սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի թիկունքին, ինչպես մի պողպատյա պատ համախմբված խորհրդային ժողովրդի անխորտակելի բարոյական-քաղաքական միասնությունը: Այդ հարկադրված են ատամների կրճտոցով խոստովանել նույնիսկ մեր ամենավոխերիմ թշնամիները:

Կապիտալիստական աշխարհի տիրակալները սարսափում են Խորհրդային Միության վերաբերյալ ճշմարտության յուրաքանչյուր խոսքի առաջ:

Պատահական չէ, վոր Բուդապեշտի դատարանը բանտ նետեց բանվոր-փականագործ Իո Ալեքսանդրին, նրա համար, վոր նա, ինչպես վկայում է մեղադրական յեզրակացությունը՝ — «Ծանոթի հետ ունեցած զրույցում համեմատել է ԽՍՀՄ-ի կյանքի պայմանները Հունգարիայի կյանքի պայմանների հետ և հաստատում էր, վոր Խորհրդային Միության մեջ ժողովուրդը նվաճել է իր ազատությունը, վոր այնտեղ չկան տերեր և չկա թշվառություն,

այն ժամանակ, յերբ ժողովուրդը Հունգարիայում քաղցից է տառապում»:

Բուրժուազիան անում է ամեն ինչ, որպեսզի իր սերունդները չիմանան իսկական ազատության յերկրի գոյության մասին, մի յերկրի, որտեղ վաղուց արդեն չկան ո՛չ տերեր, ո՛չ ստրուկներ: Ի զո՛ւր ջանքեր: Հաղթանակած սոցիալիզմի հզոր պետության մասին սրաթև համբավը գրաքննական արգելքների միջից, բանտերի պատերի միջից, համակենտրոնացման ճամբարների լարափակոցի միջից թափանցում է աշխատավորների մտքերն ու սրտերը:

Նոր տարվա նախօրյակին բոլոր կեղեքվածներն ու հարստահարվածները, ֆաշիզմի բոլոր հակառակորդները, իրենց մտքերն են ուղղում դեպի մեզ՝ սովետական բախտի տերերին, դեպի մեզ՝ կոմունիզմի հաղթական կառուցողներին, և դեպի մեր առաջնորդը՝ ամբողջ աշխատավոր մարդկության առաջնորդը՝ ընկեր Ստալինը: Յեվ մենք՝ յերջանիկ սոցիալիստական հայրենիքի յերջանիկ քաղաքացիներս չենք մոռանում արտասահմանյան, դեռևս ստր-



կացած մեր յեղբայրների և քույրերի մասին: Մեր բոլոր մտածմունքներով մենք նրանց հետ ենք: Հրճվալից կերպով տոնելով մեծ ստալինյան դարաշրջանի նոր տարվա մուտքը, խորհրդային ժողովուրդը նոր տարվա, յեղբայրական բոցավառ ողջույն է հղում Հանրապետական Իսպանիայի հերոսական պաշտպաններին և Չինաստանի անկախության համար մարտնչող անվեհեր մարտիկներին, արի հաբեշական պարտիզաններին, ֆրանսիական ժողովրդական ճակատի փառապանծ մարտիկներին, ֆաշիստական զնդանների նահատակներին, կապիտալիստական յերկրների բոլոր աշխատավորներին:

Ողջո՛ւյն և հաղթանակի ցանկություն յերկակի միասնության ճակատի՝ ֆաշիզմի և պատերազմի դեմ մղվող պայքարում:

---

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՄՂԵԼ ՓԱՍՏԵՐՈՎ

## ՓԱՍՏԵՐ ՈՒ ԹՎԵՐ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### «ԻՐ ԲԱՆՏԱԽՑԻԿՈՒՄ ԳՏԵԼ ԵՆ ՄԵՌԱԾ»

Ֆրանսիական ձախ բուրժուական «Լյումյեր» շաբաթաթերթում հրապարակված է ոչերկների մի սերիա Գերմանիայի մասին: Այդ ոչերկների հեղինակը՝ «Լյումյերի» թղթակիցը հայտարարում է, որ ինքը գրում է միայն իրական անցքերի և փաստերի, իրական, կենդանի մարդկանց մասին, ինքը նկարագրում է «Գերմանիան առանց քողի, առանց նրա անհամար շքահանդեսների (парад) և փանփարների (հանդիսավոր նվագածությունները մի քանի շեփորներով), Գերմանիան իր առօ-



րյա կյանքի մեջ»: Ահա նրա ոչերկներից մեկի մի հատվածը.

«— Կա՛նգնի՛ր:

Հնազանդվելով հրամանատարի հրամանին 10 գրոհայինները քարանում են տեղներում, 10 ժիր, լավակյաց մարդիկ, որոնք կանչված են մարդորսությամբ:

Նրանց առջև, գիշերվա աղջամուղջում աղոտակի ուրվագծվում է N մետաղագործարանի կորպուսի սիլուետը: Շենքի հյուսիսային ճակատում լուսամուտի ապակու միջից փայլկտեց լույսի ցոլքը: Շենքի ներսում մարդ կա: Որսն սկսվում է...

Գործարանի դիրեկտորը, որը տեղավորված է Բեռլինի արևելյան արվարձաններից մեկում, արդեն մի քանի ամիս է, ինչ գանգատվում է, որ կոմունիստները գործարանում ագիտացիա են մղում: Գիշերները ցեխերում կախ են տալիս պլակատներ ու լոզունգներ, բանվորներին՝ դուրս գալիս բաժանվում են հեղափոխական թռուցիկներ: Գիշերային պահակությունը երբեք ոչինչ չհայտնաբերեց: Հնարավոր է, որ այստեղ ևս կոմունիստների հանցակիցներ կան:

Գործարան ուղարկվեց գրոհայինների մի ջոկատ: Յերկրորդ գիշերն այդ ջոկատը գործարանի պատին մոտիկ առվակում մի քնած մարդ հայտնաբերեց: Մարդն աշխատում եր թաքնվել, նրան յերեք կրակով դինջացրին: Դիակը ճանաչեցին: Դուրս յեկավ, վոր այդ վոչ մի հանցանք չունեցող մի յերիտասարդ եր, վորն արդեն յերկու տարի յեր, ինչ գործ չուներ և վոչ մի քաղաքական գործունեյությամբ չեր զբաղվել:

Մինչդեռ կոմունիստական պրոպագանդան գործարանում շարունակվում եր: Այդ ժամանակ մի հատուկ ջոկատ ուղարկվեց: Հունիսյան մի գիշեր այդ ջոկատը Ն կորպուսի դռանն է:

— Շրջապատեցե՛ք շենքը,— հրաման է տալիս ջոկատի պետը: — Յերկու մարդ իմ հետևի՛ց:

Յերեք լապտերների լույսը ճեղքում է գիշերվա խավարը: Այն ուղղված է հազիվ նշմարելի մի կերպարանքի վրա: Այնտեղ մարդ կա: Նա կանգնած է մեջքը նրանց ուղղած, մեքենային կից, ձուլվելով դրա հետ վորպես մի պանդված: Դա վոխտ,



վոչ բարձր, արտահագուստով մի բանվոր է:

Առանց շրջվելու, մարդն ուղղվում է դեպի ցեխի հակադիր ծայրը: Նա թեթև կաղլտում է: Նրա կոնատակին մի կապ թռուցիկներ կան: Յերեք գրոհայինները հետևում են նրան մի քանի քայլ տարածության հեռավորությամբ, նրանց լապտերների լույսն ուղղված է ուղիղ նրա վրա: Վոչ: Նա չի շրջվում: Նա դանդաղորեն գնում է դեպի ցեխի խորքը: Հինգ վայրկյանից գրոհայինները հասնում են մարդուն: Բռնված է նա՝ այդ անորսալին: Ցեխի մյուս ծայրում մետաղյա մի փոքրիկ դուռ պաշտպանվում է դրսից գրոհայինների կողմից: Հանցագործության ապացույցներն առկա յեն. նա դեռ ևս իր ձեռքում պահած ունի թռուցիկների կապը: Բանվորը հասնում է մինչև պատը և միայն այստեղ շրջվում է: Լապտերների լույսն ընկնում է ուղիղ նրա յերեսին: Սկզբում նա աչքերն ակամայից կկոցում է: Հետո նրա աչքերը վարժվում են ուժեղ լույսին: Նրա դեմքը շատ է լարված ու խիստ: Նա ծանր է շնչում: Նա սպասում է:

Գրոհայինների ձեռքերը նրա մարմնի վրա յեն: Նրա ձեռքերին չրխկալեն ամրափակվեցին ձեռնաշղթակապերը: Կասե՞ն նրանք վորևե բան: Հայհոյելո՞ւ յեն: Վոչ: Լռությամբ նրանք ցեխի միջից նրա հետ համընթաց քայլում են:

Ջոկատի հրամանատարը հետ է ընկնում: Բարձրացնում է հատակից թուղթիկների փաթեթը: Աչքի յե անցկացնում բնագիրը·

«Ընկերնե՛ր: Այն զենքը, վոր այստեղ դուք եք պատրաստում, ուղարկվում է Իսպանիա: Այն ծառայում է բանվորներին՝ մեր դասակարգային յեղբայրներին սպանելու համար...»:

...Մոտավորապես յերեկոյան ժամի 4-ին ջոկատի հրամանատարին հաղորդեցին, վոր ձերբակալվածին «իր բանտախըցիկում պառկել են մեռած»:

## ԿՅԱՆՔԸ՝ ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԳԵՐՄԱՆԻԱՅՈՒՄ

Բեռլինում շատ բանվորներ ու մանր ծառայողներ ապրում են քաղաքի արվարձաններում, այսպես կոչված «տաղավարների գաղութում» (Լաուբենկոլոնի), փոքրիկ պարզագույն տնակներում, վորոնք



տեղ-տեղ կպցրած են ֆաներայից և զուրկ են տարրական հարմարություններից:

Գերմանիայի բանվորների կենսական մակարդակը շատ ցածր է, աշխատավարձը հազիվ է բավարարում բնակարանի վարձին և սննդավճարին: Հագուստ և սպառման այլ առարկաներ գնելու և նորոգելու համար փողը պակասում է, այն դժվարությամբ են ձեռք գցում զրկելով իրենց անհրաժեշտ սնունդից:

Մթերքները բաշխվում են ըստ քարտերի: Մանրավաճառը ուզած քանակությամբ ապրանքներ ձեռք բերել չի կարող: Նա ստանում է կենտրոնական բյուրոյից, վորը կառավարում է բաշխումը, քարտերը, իրավունք է տալիս տվյալ ապրանքից վորոշ քանակություն ձեռք բերելու: Վաճառողն ապրանքները բաշխում է իր գնորդներին ըստ իր հայեցողության: Խոզաճարպ, յուղ և այլ ճարպոտները յուրաքանչյուր ընտանիք ստանում է աննշան քանակությամբ մեկ վորոշակի վաճառողից ըստ կտրոնների: Մատակարարողներին կարելի յե փոփոխել, սակայն յուրաքանչյուր անգամ պետք է նրանց մոտ ամրակցվել: Վաճառողներն իրենց հերթին ի-

րենց մոտ ցուցակագրված կտրոնների համաձայն ապրանք ստանալու համապատասխան քարտեր են ստանում: Յուղը, ճրագուն և խոզաճարպը նույնպես նրանք բաշխում են ըստ իրենց հայեցողության:

Վաճառքի մեջ գտնվող ալյուրը գորշագույն է: Ցորենի ալյուրը խառնուրդվում է յեգիպտացորենի, բրնձի, ինչպես և կարտոֆիլի ալյուրի հետ: Հացը վատ է թրխված, հում է և գորշ: Միս և ձվի պակասություն է զգացվում:

Ամենևին չի վաճառվում մաքուր բրդյա կամ մետաքսյա կտորեղեն: Ներքին սպառման համար պատրաստվող բրդյա գործվածքները պարտադիր կերպով պետք է պարունակեն 25 %-ից մինչև 75 % արհեստական բրդի խառնուրդ:

(1937 թվի հոկտեմբերի 17-ի «Նոյե ցյուրխեր ցայտունգ» Զվիցերական բուրժուական թերթից):

## ԱՆԳՈՐԾՆԵՐԻ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՍԱՆ-ԴՈՄԻՆԳՈՅՈՒՄ

Վերջերս յեվրոպական մամուլում տեղեկություններ անցան մի քանի հազար հայիթիցիների (Հայիթի կղզու արեմտյան մասը



բռնող Հայիթիի հանրապետության բնակիչները) գազանաբար սպանության մասին, վորոնք հարևան պետության՝ Հայիթի կղզու արևելյան մասում ընկած Սան-Դոմինգոյի սահմանն եյին անցել աշխատանք վորոնելու: Ամերիկյան ձախ-բուրժուական «Նեյշեն» շաբաթաթերթը հրապարակում է այդ չլսված չարագործության հետևյալ մանրամասնությունները՝ —

«Սան-Դոմինգոյի հանրապետության դիկտատոր՝ գեներալ Ռաֆայել Տրուխիլյոյի՝ պատվեր այդ Հիտլերիկի զորամասերի կողմից հայիթական մոտավորապես 8 հազար գաղթականներին սպանելու վերաբերյալ սարսափելի լուրերը դուրս են յեկել գրաքննության միջից: Մի ամերիկացի գիտող հաղորդում է մեզ Հայիթիից հետևյալ.— Հոկտեմբերի 2-ին պրեզիդենտ Տրուխիլյոն ժամանեց այն սահմանամերձ քաղաքը, վորտեղ վերջերս կոտորած եր տեղի ունեցել, և հայտարարեց, վոր պիտի մաքրի յերկիրը «շներից, խոզերից և հայիթիցիներից»: Դրանից հետո նրա զորամասերը վրա պրծան հայիթական գյուղացիների վրա, վորոնց հողային սովն է հայրենիքից Սան-Դոմինգո

քշում: Տեղամարդկանց սկզբում շշմեցրին մահակների հարվածներով, ապա կոտորեցին մաչետաներով (դանակներով): Կանանց կոտորեցին դանակներով, և նույնիսկ յերեխաներին սվինահարեցին: Անպաշտպան մարդկանց անտառների խորքը քշեցին և այնտեղ կոտորեցին: Մի խումբը գլխովին կոտորելուց հետո բանտից դուրս քշեցին ձերբակալված և արտաքսման սպասող մարդկանց մյուս խմբակին: Նրանց ձեռքն ու վոտքը կապկպեցին և ծովում խեղդեցին: Սանտյագո քաղաքում 1900 հայիթիցիներ քշվեցին անասնապահանոցն ու այնտեղ մորթոտվեցին:

Տրուխիլյոյի զորամասերից վոմանք հրաժարվեցին հայիթիցիներին ջարդելու հրամանին հնազանդվելուց և դասալքեցին դեպի Հայիթի:

Հայիթիի տերիտորիան կրկնակի անգամ ավելի փոքր է քան Սան-Դոմինգոն, իսկ բնակչության թիվը կրկնակի անգամ ավելի շատ է: Հայիթիի բնակիչները տառապում են հողի պակասությունից: Շաքարեղեգի բերքահավաքի շրջանում հայիթիցիների մասսաները սովորաբար ուղղվում են դեպի Կուբայի շաքարեղեգնի



պլանտացիաները: Կուբայի դիկտատոր Բատիստան այժմս մասսայականորեն արտաքսում է Կուբայից հայիթիցիներին. առավել ևս ավելի մեծացնելով գործազրկությունը Հայիթիում»:

## ԼԵՀԱՍՏԱՆԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՍՈՎՈՒՄ ԵՆ

Լեհական «Տրիձեն րաբոտնիկա» թերթը հրապարակում է Լեհաստանի բանվորների սննդի դրության հետազոտության արդյունքները, վորը կատարվել է լեհական Պետական գիգիենայի ինստիտուտի կողմից:

«Ըստ այդ տվյալների,— գրում է թերթը,— բանվորի ընտանիքը ծախսում է ամսական միջին հաշվով առնվազն 108 զլոտի սննդի վրա: Քանի վոր սննդի վրա ծախսվում է աշխատավարձի մոտավորապես 60 %-ը, իսկ մնացածը գնում է հագուստի, բնակարանի և մյուս ծախսերի վրա, ապա բանվորի ընտանիքի ապրուստի մինիմումը կազմում է ամսական 185 զլոտի: Իսկ վորքա՞ն բանվորներ ունեն այդ ապրուստի մինիմումը:

Լեհաստանի գործող արդյունաբերության մեջ ընդգրկված 425 հազար բանվորներից միայն 10 տոկոսն է ամսական մոտավորապես 200-ական զլոտի վաստակում, իսկ

բանվորների մնացած 90 տոկոսն այդ գումարից շատ ու շատ ավելի պակաս են վաստակում՝ ընդվորում մոտավորապես 30 տոկոսը վաստակում է ամսական 180 զլոտի-ից ավելի պակաս, այսինքն՝ ավելի պակաս այնքանից, ինչ վոր Պետական գիգիենայի ինստիտուտի հաշվարկումներով անհրաժեշտ է միայն միջին բանվորի ընտանիքին սնուցանելու համար:

Արդյունաբերության մյուս ճյուղերում բանվորներն առավել ևս ավելի պակաս են ստանում:

Գրեթե ամեն որ մայրաքաղաքային մամուլը հաղորդում է փողոցում քաղցած մարդկանց ուշաթափությունների մասին, ինչպես և թշվառության և գործազրկության հողի վրա կատարվող ինքնասպանությունների մասին: Համարձակորեն կարող ենք հայտարարել, վոր դրանք յեզակի դեպքեր չեն, այլ մասսայական յերևույթներ են, վորոնք այն են վկայում, վոր Լեհաստանի բանվորները սոված են»:

Ըստ պաշտոնական վիճակագրության, Լեհաստանում արձանագրված են՝ 1935 թվականին 4119 ինքնասպանություններ, իսկ 1936 թվականին ինքնասպանություն-



ների թիվն աճել է մինչև 4450 մարդու: Ինքնասպանությունների թվում յեղել են՝ 1935 թվականում 21 յերեխա, իսկ 1936 թվականում՝ 39 յերեխա, 10-ից մինչև 14 տարեկան հասակի:

Լեհաստանում, ինչպես հաղորդում է «Րաբոտնիկ» թերթը, նոյեմբերի յերկրորդ կիսամսյակի ընթացքում միայն պաշտոնապես ցուցակագրվածներն ավելացել են 47605 մարդով:

## ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ՊՈԵՏԻ ԻՆՔՆԱՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Դեկտեմբերի 5-ին Բուդապեշտում (Հունգարիա) գնացքի տակ նետվեց հունգարական տաղանդավոր յերիտասարդ պոետ Ատիլա Յոժեֆը: Պրոլետարական պոետն ինքնասպանություն գործեց ծանր կարիքի և հունգարական կառավարության տևական քաղաքական հալածանքների հետևանքով ստացած ջղային քայքայվածության ազդեցության տակ:

## ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐԸ ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԻՏԱԼԻԱՅՈՒՄ

Առանձնապես ծանր է գործազուրկների վիճակն այն քաղաքներում, վորտեղ չկա

ռազմական արդյունաբերություն: Իրանք հարկադրված են հաճախ յերկուական տարի սպասել, մինչև վոր մոտենա աշխատանք ստանալու իրենց հերթը:

Ֆաշիստները գոյության համար բացարձակապես վոչ մի միջոց չունեցող ընտանիքին շաբաթական մեկ անգամ, իսկ յերբեմն եվ ավելի հազվադեպ, մեկ կիլոգրամ հաց ու մեկ լիտր կաթ են տալիս: Իսկ ի դեպ այդ ողորմությունն էլ ստանում են այն քիչ ընտանիքները, վորոնց քաղաքական բարեհուսությունը կասկածի տակ չի դըր-վում:

Բուժական «ոգնությունը» կայանում է հիվանդին մի բաժակ լիմոնադ ու մի քանի տաբլետկա ասպիրին բաց թողնելու մեջ:

(«Իլ Նուովո ավանտի» իտալական թերթի 1937 թվի դեկտեմբերի 4-ի համարից):

---



# ՀԱՆՁՆԱՐԱՐԵԼԻ ԹԵՄԱՆԵՐ՝ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՏԱՍՆՈՐՅԱ ԴԱՍԸՆԹԱՑՆԵՐՈՒՄ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

1. ԽՍՀՄ-ը՝ հաղթանակած սոցիալիզմի յերկիրն է:

ա) ԽՍՀՄ-ի արդյունաբերական ծաղկումը՝ առաջին հնգամյակում: Սոցիալիստական ինդուստրիայի վիթխարի վերելքը՝ յերկրորդ հնգամյակում: Սոցիալիզմի հաղթանակը՝ գյուղում: ԽՍՀՄ-ը՝ հասարակակարգ է առանց շահագործողների: ԽՍՀՄ-ի աշխատավորների նյութական-կենցաղային դրության արմատական բարելավումը: Կուլտուրայի վերելքը:

բ) Ստալինյան Սահմանադրությունը՝ սոցիալիզմի պայքարի և հաղթանակի հանրագումարն է ԽՍՀՄ-ում: Խորհրդային ժողովուրդների մեծ ընտանիքը: Սոցիալիստական դեմոկրատիզմի ծաղկումը ԽՍՀՄ-ում: Խորհրդային ժողովրդի բարոյական ու քաղաքական միասնությունը:

գ) ԽՍՀՄ-ի ժողովրդական տնտեսությունը՝ Ստալինյան յերրորդ հնգամյակի նախորյակին: ԽՍՀՄ-ի ժողկոմխորհի վորոշումը՝ արդյունաբերության արտադրու-

թյան ծրագրի մասին և յերկաթուղիների 1938 թվականի և 1938 թվի առաջին յեռամսյակի աշխատանքի մասին: Ստախանովյան շարժման հետագա ծավալման խնդիրները: Պայքար՝ հանուն ժողովրդական սոցիալիստական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի ամենաբարձր արտադրողականության աշխարհում:

2. Լենին-Ստալինի կուսակցությունը՝ ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի կազմակերպիչն է և ղեկավարը:

ա) Լենին-Ստալինի կուսակցությունը՝ ԽՍՀՄ աշխատավորների առաջավոր ջոկատն է նրանց պայքարում հանուն սոցիալիստական հասարակարգի ամրապնդման ու զարգացման, ղեկավարող կորիզն է ԽՍՀՄ-ի աշխատավորների բոլոր կազմակերպությունների:

բ) Կոմունիստների և անկուսակցականների բլոկի փայլուն հաղթանակը ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի ընտրություններում: Բոլշևիկյան կուսակցության և խորհրդային կառավարության ներքին և արտաքին քաղաքականության համաժողովրդական հավանության արժանանալը: Պայքար՝ հանուն տրոցկիստական-բուխարինական ֆա-



շիստական լրտեսներին, դիվերսանտներին, բուրժուական նացիոնալիստներին և ժողովրդի մյուս թշնամիներին վերջնականապես արմատախիլ անելու և ոչնչացնելու:

գ) Կուսակցության անկուսակցականների հետ կապի հետագա ամրապնդման խնդիր:

3. ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի ընտրությունների արդյունքները և ագիտացիոն աշխատանքի մոտակա խնդիրները:

4. Կապիտալիստական աշխարհը 1938 թվի սեմին:

ա) Կապիտալիզմի էկոնոմիկան: Նոր կրիզիսը վրա հասնելու նշանները:

բ) Գործազրկությունը և աշխատավորական մասսաների աղքատացումը կապիտալիզմի յերկրներում: Դասակարգային հակասությունների սրացումը:

գ) Հակասությունների սրացումը կապիտալիստական յերկրների միջև:

5. Միջազգային դրության հարցերը:

ա) Ֆաշիստական ագրեսորների (Իտալիա, Գերմանիա, Ճապոնիա) բլոկը. համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքի ուժեղացումը: ԽՍՀՄ-ի դերը հանուն խաղաղության մղվող պայքարում:

բ) Իտալա-Գերմանական ֆաշիստական ինտերվենցիան Իսպանիայում:

գ) Ճապոնական իմպերիալիստների պատերազմը չինական ժողովրդի դեմ:

դ) Աշխատավոր մասսաների՝ կոմկուսակցության ղեկավարությամբ, մղած պայքարն ընդդեմ ֆաշիզմի և պատերազմի: Միասնական բանվորական ու ժողովրդական հակաֆաշիստական ճակատը:

6. Ոտարերկրյա հետախուզական օրգանների և նրանց տրոցկիստական-բուխարինյան գործակալների լրտեսական-դիվերսիոն աշխատանքի պրիոմներն ու մեթոդները: Խորհրդային հետախուզության նշանակությունը ժողովրդի թշնամիների դեմ մղած պայքարում:

7. Հակակրոնական պրոպագանդի խնդիրները:

8. Յերկրագնդի քարտեզը: ԽՍՀՄ-ի տերիտորիան ու բնակչությունը: ԽՍՀՄ-ի աշխարհագրական քարտեզը: Կարևորագույն կապիտալիստական յերկրների տերիտորիան ու բնակչությունը. գաղութները, առևտրական ուղիները: Պատերազմի ֆա-



շիստական հրձիգների պայքարը աշխարհի նոր վերաբաժանման համար:

Համ Կ(բ)Կ Կենտկոմի կուսակցական պրոպագանդի և Ագիտացիայի բաժին:

## ԺԱՄԱՆԱԿԻ ԲԱՇԽՈՒՄԸ

10 ուսումնական որ՝ որական 6-ական ժամ պարապմունքով: Ընդամենը կազմում ե 60 ժամ: Այդ ամբողջ ժամանակը հատկացվում ե դասախոսությունների և պարապմունքների համար: Ինքնուրույն աշխատանքի համար անհրաժեշտ ե որական 3-4 ժամ հատկացնել: Բացի դրանից՝ դասընթացների ունկնդիրների համար պետք ե կազմակերպվեն եքսկուրսիաներ, թատրոնների, կինոյի հաճախում:

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՏԱՍՆՕՐՅԱ ԴԱՍԸՆԹԱՑՆԵՐԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՊԼԱՆ

| Հ. կ. | Առարկայի անունը | Ժամերի ընդհա. թիվը. |
|---|---|---|
| 1. | ԽՍՀՄ ը՝ հաղթանակած սոցիալիզմի յերկիրն է . . . . . . . . . . . . . . | 8 ժամ |
| 2. | Լենին-Ստալինի կուսակցությունը՝ սոցիալիզմի հաղթանակի կազմակերպիչն ու ղեկավարն է ԽՍՀՄ-ում . . | 8 » |
| 3. | ԽՍՀՄ-ի Գերագույն խորհրդի ընտրությունների արդյունքները և ագիտացիոն աշխատանքի հետագա խնդիրները . . . . . . . . . . . . . . | 6 » |
| 4 | Կապիտալիստական աշխարհը 1938 թվի շեմքին . . . . . . . . . . . . . . | 4 » |
| 5. | Միջազգային դրության հարցերը . | 14 » |
| 6. | Օտարերկրյա հետախուզական օրգանների և նրանց տրոցկիստական-բուխարինական գործակալների լրտեսական-դիվերսիոն աշխատանքի պրիոմներն ու մեթոդները։ Խորհրդային հետախուզության նշանակությունը ժողովրդի թշնամիների դեմ մղած պայքարում . . . . . . . . . | 4 » |
| 7. | Հակակրոնական պրոպագանդի խնդիրները . . . . . . . . . . . . . . | 6 » |
| 8. | Յերկրագնդի քարտեզը . . . . . . . | 10 » |
| | Ընդամենը . . . . | 60 ժամ |

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՏԱՍՆՕՐՅԱ ԴԱՍԸՆԹԱՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Ի. Վ. Ստալին՝— *ԽՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին։ Զեկուցում Խորհուրդների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարում*, 1936 *թվի նոյեմբերի* 25-*ին։ ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ.* 1936 *թ.*

2. Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրությունը (Հիմնական օրենքը)։ *ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ.* 1936 *թ.*

3. Ի. Վ. Ստալին՝— *Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական և մյուս յերկերեսանիների լիկվիդացիայի միջոցառումների մասին։ Համ Կ(բ)Կ կենտկոմի պլենումում* 1937 *թվի մարտի* 3–5-*ին արտասանած զեկուցումն ու յեզրափակման խոսքը։ ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ.* 1937 *թ.*

4. Ի. Վ. Ստալին՝— *Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգում ընտրողների նախընտրական ժողովում* 1937 *թվի դեկտեմբերի* 11-*ին, Մեծ թատրոնում ար-*

տասանած ճառը: ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ. 1937 թ.

5. Ընտրողների նախընտրական ժողովներում ընկ. ընկ. Վ.Մ. Մոլոտովի, Լ.Մ. Կագանովիչի, Կ. Յե. Վորոշիլովի, Մ. Ի. Կալինինի, Ա.Ա. Անդրեևի, Ա. Ի. Միկոյանի, Ս. Վ. Կոսիորի, Վ. Յա. Չուբարի, Ն. Ի. Յեժովի, Ա.Ա. Ժդանովի, Գ. Դիմիտրովի, Մ. Մ. Լիտվինովի յելույթները:

6. Վ. Մ. Մոլոտովը՝— Հոկտեմբերյան հեղափոխության քսանամյակի առթիվ: 1937 թվի նոյեմբերի 6-ին Մեծ թատրոնում հանդիսավոր նիստում տված դեկուցումը: Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատը: 1937.

7. Վ. Մ. Մոլոտով՝— Ճապոնա-գերմանական-տրոցկիստական գործակալների վնասարարության, դիվերսիաների և լրտեսության դասերը: ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

8. Մ. Ի. Կալինին՝ — Ի՞նչ տվեց աշխատավորներին խորհրդային իշխանությունը: ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

9. Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության կենտրոնական կոմիտեյի դիմումը: Բոլոր ընտրողնե-



րին, բանվորներին, բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, Կարմիր Բանակին, Խորհրդային ինտելիգենցիային: ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

10. ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունները 1937 թվի դեկտեմբերի 12-ին կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին քվեարկող ընտրողների թվի վերաբերյալ Կենտրոնական ընտրական հանձնաժողովի հաղորդագրությունը: «Պրավդա» 1937 թվի դեկտեմբերի 17-ին:

11. Խորհրդային իշխանության 20 տարին: Վիճակագրական ժողովածու (թվական նյութ պրոպագանդիստների համար): Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

12. Մեր հայրենիքը: ՀամԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

13. Արդյունաբերության արտադրության ծրագրի մասին և յերկաթուղիների աշխատանքի մասին 1938 թվականում և 1938 թվի առաջին յեռամսյակում. ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշումը: «Պրավդա» 1937 թվի նոյեմբերի 30:

14. ԽՍՀՄ-ը և կապիտալիզմի յերկրնե-

րը: Համ. Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

15. Գ. Դիմիտրով՝ — Պայքարի ժողովրդական ճակատ՝ ընդդեմ ֆաշիզմի և պատերազմի: Համ. Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

16. Գ. Դիմիտրով՝ — Միջազգային պրոլետարիատի միասնությունն ընթացիկ մոմենտի բարձրագույն պատվիրանն է: Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

17. Գ. Դիմիտրով՝ — Խորհրդային Միությունը և կապիտալիստական յերկրների բանվոր դասակարգը: Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

18. Խոզե Դիաս՝ — Ժողովրդական ճակատի դրոշի տակ: Համ. Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

19. Վան Մին՝ — Չին ժողովրդի պայքարն ընդդեմ ճապոնական ագրեսորի և ԽՍՀՄ-ի Մեծ սոցիալիստական հեղափոխությունը Համ Կ(բ) կենտկոմի կուսհրատ: 1937.

20. Դ. Մանուիլսկիյ՝ — կապիտալիստական շրջապատման և տրոցկիստական ագենտների մասին: Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.



21. Համառուսական Արտակարգ Հանձնաժողով — ՈԳՊՈՒ — ՆԳԺԿ-ի քսանամյակի առթիվ: ՀամԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

22. Զակովսկիյ՝ — Ոտարերկրյա հետախուզական օրգանների և նրանց տրոցկիստա-բուխարինական գործակալների վորոշ մեթոդների և պրիոմների մասին: ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

23. Ն. Աբուզով՝ — Գեստապո: Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

24. Ճապոնական հետախուզության քայքայիչ աշխատանքը: Համ. Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ 1937.

25. Ն. Ռուբին և Յա. Սերեբրով՝ — ֆաշիստական հետախուզությունների քայքայիչ աշխատանքի մասին ԽՍՀՄ-ում և նրա դեմ պայքարելու խնդիրների մասին: Համ Կ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937.

26. Յե. Յարոսլավսկիյ՝ — Հակակրոնական պրոպագանդի խնդիրները: ՀԿ(բ)Կ կենտկոմի կուսհրատ: 1937 թ.:

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

«Հակակոմունիստական բլոկ» — *այսպես են Գերմանիան, Իտալիան ու Ճապոնիան անվանում իրենց ռազմա-քաղաքական դաշինքը: Սրա հիմքում ընկած են յերեք պայմանագրեր՝ — 1) Իտալա-գերմանական (և այսպես կոչված «Բեռլին—Հռոմ առանցքին» հիմք դրած) արձանագրությունը՝ ստորագրված 1936 թվի հոկտեմբերի 24-ին, 2) գերմանա-ճապոնական՝ իբր թե Կոմինտերնի դեմ պայքարելու պայմանագիրը («Հակակոմինտերնական պակտը»)՝ կնքված 1936 թվի նոյեմբերի 25-ին և 3) Իտալիան գերմանա-ճապոնական պայմանագրին միանալու համաձայնագիրը՝*



*ստորագրված 1937 թվի նոյեմբերի 6-ին: Ֆաշիստական յերկրները, իբրև թե բացառապես կոմունիզմի դեմ համատեղ պայքարելու համար կնքված համաձայնագրի ցուցանակի տակ, փորձում են քողարկել իրենց բլոկի (միության) իսկական նպատակները:*

*Իրականում, այդ «Հակակոմունիստական բլոկի» բովանդակությունն ու նպատակը հանդիսանում է իրենց թալանչիական պլանների իրագործման համար Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի փոխադարձ ռազմական, քաղաքական և այլն պաշտպանությունը՝ — 1) Իսպանիան գրավելու և Միջերկրական ծովի ամբողջ ավազանն իմպերիալիստական վերաբաժանման յենթարկելու համար, 2) գերմանական ֆաշիզմի նախագծած ավանտյուրաներն Ավստրիայում ու Չեխոսլովակիայում հաջողությամբ իրագործելու համար, 3) Չինաստանը Ճապոնիայի գաղութը դարձնելու համար և 4) ինչպես Հեռավոր Արևելքից, այնպես և արևմուտքից ԽՍՀՄ-ի դեմ հարձակումը նախապատրաստելու համար: Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի «Հակակոմունիստական բլոկը» բացահայտորեն ուղղված է Խորհրդային Մի-*

ության դեմ, բայց այն՝ առաջին հերթին Անգլիայի, ԱՄՆ-ի և Ֆրանսիայի շահերին է սպառնում:

Ֆաշիստական ագրեսորների յեռյակ բլոկն առհասարակ հնարավոր դարձավ միայն նրա համար, վորովհետև վո՛չ Անգլիան, վո՛չ Ֆրանսիան, վո՛չ էլ ԱՄՆ-ը չեն վարում քիչ թե շատ հետեվողական քաղաքականություն ֆաշիստական ագրեսիային կոլեկտիվ կերպով դիմադրություն ցույց տալու համար. միայն նրա համար, վոր այդ պետությունները (առանձնապես Անգլիան) ագրեսիայի հանդեպ գործնականում թողտվության քաղաքականություն են վարում: Լիովին պարզ է, վոր թե՛ Գերմանիան, թե՛ Իտալիան և թե՛ Ճապոնիան՝ դրանից ոգտվելով, միայն շանտաժի և կողոպտողականության իրենց քաղաքականությունն են ուժեղացնում, միշտ ավելի ու ավելի նոր ու միշտ ավելի և ավելի լըկտիացող պահանջներ առաջ քաշելով: Ֆաշիստական ագրեսորների «հակակոմունիստական բլոկը» հանդիսանում է միջազգային շանտաժի և կողոպտողականության մի զե՛նք, այլ յերկրների ներքին կյանքին մի-



ջամտելու մի զե՛նք, պատերազմի մի զե՛նք:

* * *

**Հոնկոնգ**՝— Անգլիայի գաղութն է՝ Չինաստանի հարավում: Նրա տերիտորիան ընդգրկում է անգլո-չինական առաջին պատերազմից հետո Անգլիայի կողմից 1842 թվին գրավված Հոնկոնգ կղզին, ու կղզու դեմուդեմ, մայր ցամաքի վրա գտնըվող Կոուլուն վոչ մեծ թերակղզին՝ համանուն քաղաքով: Գաղութի մեջ նույնպես մտնում է Կոուլունից ավելի հյուսիս ընկած և Չինաստանից Անգլիայի «վարձակալած» մի վոչ մեծ տերիտորիան: Հոնկոնգ կղզին հարավային Չինաստանի կարևորագույն քաղաքական կենտրոնից՝ Կանտոնից 140 կիլոմետր է հեռու: Կոուլունը Կանտոնի հետ միացած է յերկաթուղով: Կոուլունը Հոնկոնգ կղզուց բաժանվում է միայն մի նեղ նեղուցով: Գաղութի գլխավոր քաղաքն է Վիկտորիան (Հոնկոնգ կղզու վրա): Նա մոտ 400 հազար բնակիչ ունի: Ամբողջ գաղութի բնակչության թիվն է մոտավորապես 950 հազար մարդ: Նրանցից միայն 20 հազարն են յեվրոպացիներ. մնացածները չինացիներ են:

100 հազար չինացի մշտապես նավերում՝ ծովում են ապրում:

Անգլիայի իշխանության տակ գտնվող Հոնկոնգ կղզին Չինաստանի ամբողջ հարավային մասի խոշոր առևտրական կենտրոնն է հանդիսանում: Այդ՝ միաժամանակ խաղաղօվկիանոսյան կարևորագույն առևտրական ուղիների հանգույցն է: Հոնկոնգը՝ օվկիանոսային առաջնակարգ նավահանգիստ է՝ ըստ իր շրջանառության՝ աշխարհում խոշորագույններից մեկը: Այստեղ տեղավորված են խոշորագույն բանկեր (մասնավորապես՝ Հոնկոնգ—Շանհայ անգլիական բանկի՝ Ասիայում ամենախոշոր բանկի, վարչությունը), խոշոր առևտրական և այլն մի ամբողջ շարք միջնորդական ձեռնարկություններ, խոշոր նավաշինարաններ, ցեմենտի գործարաններ, շաքարի գործարաններ: Հոնկոնգում կան ընդամենը 170 խոշոր ու մանր ձեռնարկություններ:

Ակներև է Հոնկոնգի հսկայական տնտեսական նշանակությունն Անգլիայի համար: Բացառիկ մեծ է Անգլիայի համար նույնպես չինական ջրերում ու Հեռավոր Արևելքում Անգլիայի ռազմական և ոդային նավատորմիղի բազան հանդիսացող



այդ գաղութի քաղաքական ու ռազմական նշանակությունը: Վերջին յերկու տարիներս Անգլիայի կառավարությունը խոշոր գումարներ է հատկացրել Հոնկոնգը՝ Խաղաղ օվկիանոսում անգլիական իմպերիալիզմի այդ առաջապահ (ավանպոստ) ամրացնելու համար:

Մանավանդ, Անգլիայի համար իրենց մեջ ավելի լուրջ վտանգ են թաքցնում Հոնկոնգին սահմանակից ջրերում Ճապոնիայի նավատորմիղի վերջին գործողությունները, մասնավորապես Հոնկոնգի շրջակայքում ընկած մի շարք կղզիները Ճապոնիայի նավատորմիղի կողմից գրավվելը:

⁂

Լատինական Ամերիկա կամ Լատինաամերիկական յերկրներ:— *Այսպես են կոչվում Հարավային և Կենտրոնական Ամերիկայի յերկրները: Նրանց մեծամասնությունը ձևականորեն անկախ յերկրներ են, բայց հարավային ու կենտրոնական ամերիկական տերիտորիայի վոչ մեծ մասը բռնում են յեվրոպական պետությունների և ԱՄՆ-ի գաղութները: Կենտրոնական Ամերիկայում գտնվում են՝— Մեքսիկայի, Գվատեմալայի, Սան-Սալվադորի, Գոն-*

դուրասի, Նիկարագուայի, Կոստա-Ռիկայի, Պանամայի, Կուբայի (համանուն կղզու վրա), Հայիթիի, Սան-Դոմինգոյի (վերջին յերկուսը՝ Հայիթի կղզու վրա) հանրապետությունները և հետևյալ գաղութները՝ Բրիտանական Գոնդուրասը, Ցամայկա կղզին, Բահամյան կղզիները (այս բոլոր գաղութներն Անգլիային են պատկանում), Պորտո-Ռիկո (ԱՄՆ-ին է պատկանում) և Փոքր Անտիլյան կղզիները (պատկանում են մասամբ Անգլիային, մասամբ՝ Ֆրանսիային):

Հարավային Ամերիկայում գտնվում են՝— Կոլումբիայի, Վենեցուելայի, Բրազիլիայի, Եկվադորի, Պերույի, Բոլիվիայի, Պարագվայի, Ուրուգվայի, Արգենտինայի և Չիլիի հանրապետությունները և գաղութներ՝ Ֆրանսիական, հոլլանդական ու բրիտանական Գվիանան, Կյուրասո կղզին (հոլլանդական գաղութ) ու Տրինիդադ կղզին (անգլիական գաղութ):

Այդ յերկրների և կղզիների գրեթե ամբողջ տերիտորիան, մոտավորապես Ամերիկայի հայտնաբերման (15-րդ դարի վերջում) ժամանակից և մինչև 19-րդ դարը, պատկանում եր Իսպանիային և մասամբ Փորթուգալիային (վերջինիս պատկանում



եր այժմյան Բրազիլիան): Այդ ժամանակներից և մինչ այժմ կենտրոնական և հարավամերիկական հանրապետությունների պետական լեզուն մնում են իսպանական ու մասամբ փորթուգալական (Բրազիլիայում) լեզուները: Այդ լեզուները ֆրանսերենի և իտալերենի հետ միասին պատկանում են լեզուների, այսպես կոչված, լատինական խմբին՝ այսինքն՝ լեզուների մի խմբի՝ վորոնք լատինական լեզվից են ծագել, վորով խոսել է հին Հռոմի (հին Իտալիայի) բնակչությունը: Այստեղից ել ծագել է «լատինական Ամերիկա» անունը:

Մինչև այժմս լատինա-ամերիկական հանրապետությունները պահպանել են հսկայական տնտեսական հետամնացություն (հանդիսանալով առավելապես ագրարային յերկիր) ու ֆեոդալա-ճորտատիրական հարաբերությունների ամենաուժեղ մնացուկներ: Այդ յերկրները, չնայած ձևական ինքնուրույնությանը, գտնվում են կիսագաղութային դրության մեջ՝ ճիշտ է, արդեն վոչ թե Իսպանիայից ու Փորթուգալիայից, այլ Անգլիայից և ԱՄՆ-ից: Լատինա-ամերիկական յերկրների բնական հարստությունները հսկայական են. դրացից կարևորագույններն են՝— ցորեն և ա-

նասնապահական մթերքներ (Արգենտինա), սուրճ, բամբակ, կաուչուկ (Բրազիլիա), շաքար (Կուբա), նավթ (Մեքսիկա, Վենեսուելա, Տրինիդադ), յերկաթ, մարգանեց (Բրազիլիա), անագ (Բոլիվիա), բորակ (Չիլի): Մինչև համաշխարհային պատերազմը Հարավային Ամերիկայում տերուտնորեն եր առավելապես անգլիական կապիտալը: Պատերազմից հետո այնտեղ շատ ուժեղացավ ԱՄՆ-ի տնտեսական ու քաղաքական ազդեցությունը: Բայց վերջին տարիներս, ինչպես Անգլիայի, այնպես և ԱՄՆ-ի դիրքերը Լատինական Ամերիկայում ֆաշիստական պետությունների՝ ամենից առաջ Գերմանիայի խիստ ճնշման տակ են գտնվում: Վերջերըս ֆաշիստական հեղաշրջումը Բրազիլիայում հանդիսանում է նաև Լատինական Ամերիկայի տերիտորիայում իր ազդեցության համար հենակետեր ստեղծելու փորձեր անող Հիտլերի զավթողական քաղաքականության վառ դրսևորումը:

Լատինական Ամերիկան զոհ է հանդիսանում իմպերիալիստական պետությունների դաժան ու չդադարող մրցակցության՝ հանուն քաղաքական և տնտեսական տիրապետության: Նրա պատմությունն այդ



այն արյունալի հեղաշրջումների և ներքին պատերազմների շղթան է, վորոնք մղում են զանազան գեներալները՝ այս կամ այն իմպերիալիստական պետության տիրապետող նենգախմբերի վարձկանները: Բայց վերջին ժամանակներս Լատինական Ամերիկայի յերկրներում սկսում է զարգանալ բանվորական շարժումը, ֆաշիզմի պատերազմի և իմպերիալիստական հարստահարման դեմ մղվող պայքարի շարժումը՝ հանուն պրոլետարական միասնության և ժողովրդական ճակատի: Առանձնապես լայն ծավալում ստացավ այդ շարժումը Մեքսիկայում, վորտեղ հեղափոխականորեն տրամադրված մասսաների ազդեցությունն արդեն մի այնպիսի ուժ ձեռք բերեց, վոր մեքսիկական կառավարությունը հանդես յեկավ պաշտպանելու հանրապետական Իսպանիային՝ ֆաշիստական խռովարարների և իտալա-գերմանական ինտերվենտների դեմ նրա (Հանրապետական Իսպանիայի) մղած պայքարում:

---

Չորսի պակտը՝— այսպես, սովորաբար կրճատ է կոչվում այն պակտը (պայմանագիրը), վորը կնքված է Անգլիայի, Ֆր-

րանսիայի, Գերմանիայի և Իտալիայի միջև, 1933 թվի ամռանը: Պայմանագրի եյությունը հանգեցնում էր նրան, որպեսզի բոլոր միջազգային կարևորագույն հարցերը, որոնք կվերաբերեն Յեվրոպային, լուծվեն ոչ թե Ազգերի Լիգայի օրգաններ կողմից, այլ միայն վերոհիշյալ չորս պետությունների նեղ շրջանակում: Այլ խոսքով ասած, այդ հարցերը յենթադրվում էր լուծել բացառապես ի հաշիվ և ի վնաս այն պետությունների, որոնք այդ շրջանին չէյին պատկանում: Այդպիսով «չորսի պակտի» նախագիծն առաջ քաշած (ձևականորեն Իտալիան, իսկ փաստորեն՝ Անգլիան) պետությունները հույս ունեյին մի յելք գտնելու այն դրությունից, որ ստեղծվել էր Վերսալյան դաշնագիրը վերանայելուն վերաբերող Գերմանիայի պահանջներից: Այդ պահանջները յենթադրվում էր բավարարել ի հաշիվ Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Լիտվայի և, իհարկե, ԽՍՀՄ-ի: Անգլիական կառավարությունը հույս ուներ, որ այսպիսով գերմանական ֆաշիզմի ուշադրությունը յերկար տարիներ դեպի Արևելք է դառնալու, և հենց դրանով իսկ կպահովվի Ֆր-



րանսիայի սահմանների ու Անգլիայի ափերի անվտանգությունը:

Իրոք, Լեհաստանն ու Չեխոսլովակիան Ֆրանսիայի դաշնակիցներն եյին: Գերմանական միտումների ի հաշիվ նրանց բավարարումը, պետք է որ անուղղակի կերպով հարվածեր Ֆրանսիային, լրջորեն թուլացներ նրա դիրքերը Յեվրոպայի արևելքում և քայքայեր նրա՝ որպես մեծ պետության, դրությունը: Այդ լրովին համապատասխանում էր Գերմանիայի և Իտալիայի մտադրություններին: Բայց Անգլիան էլ, որը շահագրգռված էր Ֆրանսիայի սահմանների անվտանգությամբ (քանի որ դրանք մոտիկ են Անգլիայի ափերին), դրան զուգընթաց շահագրգռված էր և Ֆրանսիայի միջազգային ազդեցության սահմանափակմամբ: Հարվա՛ծ Ֆրանսիային, նրա անջատո՛ւմն իր արևելայեվրոպական դաշնակիցներից՝ այդպես է վերջին հաշվով «չորսի պակտի» քաղաքական էությունը:

«Չորսի պակտը» գործնականորեն չիրագործվեց: Առաջինը՝ Ֆրանսիան, որը սկսեց հրաժարվելու այն ստորագրելուց, բնականաբար, արգելակում էր գործ-

նականորեն դրա իրագործմանը: Երկրորդը՝ Ավստրիան գրավելու Գերմանիայի 1934 թվի փորձը (Վիեննայում նրա կազմակերպած ֆաշիստական պուտչի օգնությամբ) առաջացրեց գերմանա-իտալական հարաբերությունների շեշտակի սրվածություն և մերձեցումն Իտալիայի և Ֆրանսիայի միջև: «Չորսի պակտին» կյանքի կոչած ուժերի փոխհարաբերությունը փոխվեց, և պակտը փաստորեն դադարեց գոյություն ունենալուց:

Նոր փոփոխությունները միջազգային պայմաններում և 1936 թվի հոկտեմբերի 24-ին գերմանա-իտալական համաձայնագրի («Բեռլին—Հռոմ» առանցքի) կնքումը հանգեցրին այն բանին, որ «չորսի պակտի» վերակենդանացման նախագծերը դարձան կապիտալիստական Եվրոպայի գլխավոր պետությունների միջև վարվող բանակցությունների կենտրոնը: Այդպիսի նախագիծ, թեպետ քողարկված կերպարանքով, շատ է առաջ քաշվել Իսպանիայի գործերում, այսպես ասած, չմիջամտելու առթիվ: Ըստ էության, հենց նրա մասին էր խոսքը, անգլիական կառավարության ներկայացուցիչ լորդ Գալիֆակսը վերջերս Հիտլերի հետ ունեցած հանդիպման ժամա-



նակ, ինչպես նմանապես և դրանից անմիջապես հետո Լոնդոնում՝ անգլո-ֆրանսական բանակցություններում:

Այդ բոլոր բանակցություններումն ու խորհրդակցություններումը Ֆրանսիան դիմադրում է փաստորեն Անգլիայի կողմից պաշտպանվող գերմանա-իտալական ֆաշիզմի միասնական ճակատին: Կզիջի՞ արդյոք Ֆրանսիան՝ — ահա՛ թե ինչից է զգալի չափով կախված լինելու իրադրությունների հետագա ընթացքը:

Ֆրանսիական կառավարությունը պետք է հաշվի առնի, որ 1933 թվի իր տատանումները և այն հանգամանքը, որ նա իսկ չարեց այն ժամանակ «չորսի պակտն» ստորագրելուց հրաժարվելու, նպաստեցին Լեհաստանի քաղաքականության փոխելուն: Լեհաստանը փաստորեն հրաժարվեց Ֆրանսիայի հետ ունեցած դաշինքից և անցավ գերմանական ֆաշիզմի բանակը: «Չորսի պակտի» վերակենդանացումն ըսպառնում է Արևելյան, Կենտրոնական և Հարավարևելյան Եվրոպայում Ֆրանսիայի դիրքերի լրիվին ջախջախվելուն: Մանավանդ, որ այժմ Իտալիան սանձը տվել է Բեռլինի ձեռքը և չի հակադրում գերմանական գավթողական պլաններին Ա-

վստրիայում ու Բալկանյան թերակղզու պետություններում: Կենտրոնական, Արևելյան և Հարավարևելյան Եվրոպայում գերմանական զավթողական պլանների իրականացումը վերջին հաշվով լրջորեն սպառնում է Անգլիային, քանի որ եվրոպական կոնտինենտում գերմանական զորքերի ուժեղացմանը զուգընթաց, մեծանում է գերմանական սպառնալիքը նաև Անգլիայի ափերի հանդեպ: Իսկ Բալկաններում գերմանական ազդեցության ուժեղացումն սպառնալիք կստեղծի Բրիտանական իմպերիայի զանազան երկրները կապող միջերկրածովային ուղիների համար:

Ո՛չ թե զիջումներով ագրեսորից փրկվելու փորձը, ո՛չ թե ագրեսորի զավթողական պլանների սրի ծայրը դեպի մյուս երկրները դարձնելու փորձը, մի խոսքով, ո՛չ թե «չորսի պակտը»՝ այլ ագրեսորին կոլեկտիվ հակահարվա՛ծն է համապատասխանում և՛ Անգլիայի, և՛ Ֆրանսիայի շահերին, և՛ խաղաղությունը պահպանելու շահերին:

---

Պրեֆեկտ՝ — այսպես էր կոչվում հին Հռոմում այն անձը, վորը վարչական կամ



զինվորական վորոշ դիրք էր գրավում: Ժամանակակից Ֆրանսիայում պրեֆեկտ են կոչվում կառավարության կողմից այն դեպարտամենտների (գերատեսչությունների) պետ նշանակվածները, վորոնց (դեպարտամենտների) վրա բաժանված է երկիրը: Նաև պրեֆեկտներ են կոչվում Փարիզի վոստիկանության պետն ու Սենայի դեպարտամենտի (վորի տերիտորիայում գտնվում է Փարիզը) մյուս քաղաքների վոստիկանության պետերը:



Իտեղի պատ. խմբագրի՝ Հ. ԴՌՆՈՅԱՆ
Սրբագրիչ՝ Հ. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ
ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ Ն—6501
Տիրաժ 8123, պատվեր 87
Հանձնված է արտադրության 27/I 1938 թ.
Ստորագրված է տպագրության 4/I
Ստորագրված է տպագրության 4/II 1938 թ.

ՏՊԱՐԱՆ, ԵՐԵՎԱՆ